օրինակը այն գաղտնի վաւերագրին, որուն պատճառաւ խուզարկուեցաւ Արգոսը: Սակայն այս բոլորին մէջ կարեւոր գիւտը այն եղաւ, որ երեւան հանուեցաւ «մարդկային փաստաթուղթ» մը՝ յանձին Անտոն Միլլըրի կամ Միւլլէրի, «Սովիէթհաուզ»ի ծածկագիրներու պահապանը, որ երկար տարիներէ ի վեր կը փնտռուէր իբրեւ լրտեսական կազմակերպութեան գլխաւոր վարիչներէն մէկը: Յիշեալը սերտ յարաբերութիւն ունէր առեւտրական պատուիրակութեան պետին հետ, որուն տունը կը բնակէր վերջերս:

Վերջացնելով, նախարարը յոյս յայտնեց թէ դիւանագիտական յարաբերութեանց խզումով լրտեսական այս գարշելի կազմակերպութիւնն ալ պիտի անհետանայ բոլորովին:

## Խզումը եւ Թուրքիա

«Թայմզ»ի Պոլսոյ թղթակիցը կը հեռագրէ Մայիս 26 թուականով.—

Անգլիոյ եւ սովետներու միջեւ ձգտումը խիստ մեծ ուշադրութիւն կ'արթնցնէ հոս, քանի որ Թուրքիա սահմանակից է թէ՛ Անգլիոյ (Միջագետքի մէջ) եւ թէ Խորհրդային Ռուսիոյ հետ: Այս պարագան չի կրնար անտարբեր թողուլ Թուրքիան երկու երկիրներու յարաբերութեանց մասին:

Էնկիւրիի պաշտօնաթերթ «Հաքիմիյէթը Միլլիյէ» այս առաւօտ կը հրատարակէ երեսփոխան Մահմուտ պէյի մէկ յօդուածը: Սղերդի երեսփոխանը կացութիւնը պարզելէ վերջ կը հարցնէ. «Անգլիոյ եւ Ռուսիոյ միջեւ խզումը ի՞նչ արդիւնք ու ազդեցութիւն պիտի ունենայ միւս երկիրներուն եւ առհասարակ ընդհանուր քաղաքական կացութեան վրայ:» կը հարցնէ նաեւ. «անգլիական կառավարութեան այս ընթացքը արդեօք նախերգա՞նքն է Մեծն Բրիտանիոյ կողմէ նոր քաղաքականութեան մը. ասիկա ստոյգ կ'երեւայ, քանի որ ռուսական խնդիրը վէճի առարկայ դարձաւ Ֆրանսայի Նախագահին վերջերս Լոնտոն այցելութեան առթիւ:»

Մահմուտ պէյ կը վերջացնէ յոռետես շեշտով մը:

«Ճիւմհուրիյէթ»ի մէջ նոյն նիւթին մասին յօդուած մը կը գրէ Եօնուս Նատի պէյ, որ Ռուսիոյ հանդէպ անգլիական քաղաքականութիւնը «յարձակողական» կը նկատէ: Նատի պէյ եւս շատ յոռետես է անգլեւխորհրդային յարաբերութեանց խզումէն առաջ գալիք կացութեան մասին:

## Պոլշեւիկներուն 10 օր պայմանաժամ տրուած

Ուրբաթ առաւօտ Անգլիոյ արտաքին նախարար սըր Օսթըն Չէմպըլէյն 700 բառէ բաղկացած ծանուցագիր մը հաղորդեց Լոնտոնի խորհրդային գործակատար Ռօզէնկոլցի, որով յայտնելէ վերջ թէ երկու երկիրներու միջեւ դիւանագիտական յարաբերութիւնները խզուած են՝ 10 օր պայմանաժամ կ'ուտայ իրեն եւ իր պաշտօնէութեան՝ անգլիական հողէն մեկնելու: Իբրեւ պատճառ ցոյց կը տրուի այն թէ՝ առեւտրական պատուիրակութեան անդամները զինուորական լրտեսութեամբ և խռովարարական ձեռնարկներով կը զբաղէին, աւելի գատ Ռօզէնկոլց ինքն ալ հեռագրով հրահանգ ուզած էր Մոսկուայէն Անգլիոյ մէջ քաղաքական պայքար մը ստեղծելու համար:

Բոլոր մեկնողները իրենց անցագիրները պիտի ներկայացնեն ոստիկանութեան: Գալով Անտոն Միւլլէրի, կը կարծուի թէ իբրեւ լրտես հետապնդումի պիտի ենթարկուի:

Ծանուցագիրը յանձնուելէ վերջ, աշխատաւորական 12 երեսփոխաններ հացկերոյթ մը տուին ի պատիւ Ռօզէնկոլցի, Խինչուքի եւ Պոկալոմոֆի, որոնք բաժակաճառեր խօսեցան: Պահպանողականները զայրացած են այս առթիւ եւ Երեսփ. ժողովին մէջ խնդիր պիտի հանեն:

Անգլիոյ մէջ ռուսական շահերու պաշտպանութիւնը Գերմանիոյ յանձնուեցաւ:

## Իտալական պատերազմը՝ 1935—40ին

երէկ հրատարակեցինք Մուսօլինիի երկար ճառը: Հեռագիրները կը հաղորդեն նաեւ հետեւեալ հատուածները.

— « Իտալական ազգը պէտք է կառավարեմ ես դեռ 10—15 տարի, որովհետեւ իմ յաջորդս դեռ չէ ծնած: Ֆաշիստ Իտալիոյ որոշ պարտականութիւնն է զօրացնել բանակը, նաւատորմը եւ օդանաւային ուժը: Պէտք է որ պահանջուած վայրկեանին կարենանք շարժման մէջ դնել 5 միլիոն զինուոր եւ զինել զանոնք, պէտք է ուժովցնենք մեր ծովային նաւատորմը, մեր օդանաւերը ա՛յնքան շատ եւ զօրաւոր պէտք է ըլլան, որ անոնց թեւերը կարենան արեւը խափանել մեր երկրին վրայ: Այն ատեն է միայն, որ երբ 1935էն 1940ի միջեւ եւրոպական պատմութեան կենսական մէկ վայրկեանին հասնինք, կարենանք լսելի ընել մեր ձայնը եւ ճանչցնել մեր իրաւունքները»:

Խօսելով հանրաքուէին մասին, Մուսօլինի ըսաւ. «Այսօր, Մայիս 26, հանդիսաւորապէս կը թաղենք ժողովրդավարական հանրաքուէի սուտը: Վաղուան Խորհրդարանը պիտի ընտրուի պետական արհեստակցական կազմակերպութեանց կողմէ:

## Մազարիք վերընտրուած

Ուրբաթ օր Փրակայի մէջ տեղի ունեցաւ Չեխօսլովաքիոյ Հանրապետութեան նախագահի ընտրութիւնը: Քուէարկողներու թիւն էր 434 հոգի. 104 հոգի սպիտակ քուէ տուին. Հանրապետութեան նախագահ Մազարիք առաջին քուէարկութեամբ վերընտրուեցաւ 274 ձայնով: Համայնավար Թեկնածու Սթուրք 54 քուէ ստացաւ:

Թոմաս կարիկ Մազարիք ծնած է 1850ին Մորավիոյ Հատոնին փոքր քաղաքին մէջ. հայրը կառապան էր, ինք ալ նախ երկաթագործի աշկերտ եղաւ, յետոյ Վիէննայի համալսարանէն տոքթորի աստիճան առաւ: 1878ին ամուսնացաւ Հայուհիի մը՝ Շառլի կարիկի հետ. զոր ճանչցած էր Լայփցիկի համալսարանին մէջ: Փրակայի չեխ համալսարանի փրոֆէսէօր եղած եւ մեծ դեր ունեցած է Չեխօսլովաքիոյ անկախութեան մէջ:

## Լինտպէրկ մեկնեցաւ

Ուրբաթ օր պատերազմական եւ առեւտրական նախարարութեան, ծերակոյտի, Սիթրօէնի եւ Շան զ'էլիզէի թատրոնին մէջ ընդունելութիւններ եղան Լինտպէրկի: Առաւօտուն կանուխ ֆրանս. օդանաւով մը մէկ ժամ թռիչք կատարեց Փարիզի վրայ: Իսկ երէկ կէսօրին Սփիրիթ աւ Սէնթ Լուիզ օդանաւով Փարիզի վրայ շրջան մը կատարելէ վերջ ուղղուեցաւ դէպի Պրիւսէլ, ուր պիտի հասնէր ժամը 3ին: Իրեն կ'ուղեկցէին բազմաթիւ ֆրանս. օդանաւեր:




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10e)

Le Gérant: H. TEURNIER

